Շվեդիայի հայ համայնքը կազմավորվել է 1970-ական թվականներին՝ ի հաշիվ Լիբանանից, Պաղեստինից, Սիրիայից, Իրանից և Թուրքիայի արևելյան հատվածներից (հիմնականում ոչ հայախոս) գաղթած հայերի:

Նրանց հոսքը Շվեդիա պայմանավորված է եղել Մերձավոր Արևելքի երկրներում ստեղծված անկայուն քաղաքական իրավիճակով և Շվեդիայում սոցիալական ապահովության բարձր մակարդակով: 1980 թվականին հայերի թիվը Շվեդիայում հասել է 500-ի: Հետագա տարիներին հայերի հոսքը Շվեդիա շարունակվել է հատկապես Իրանից: 1990-ական թվականներին Շվեդիայում հաստատվել են շուրջ 400 հայաստանցիներ:

Երկրում հայերի թվի ստվարացմանը զուգընթաց սկսել է ձևավորվել համայնքի ազգային կյանքը: 1974 թվականին հիմնվել է շվեդահայ առաջին կազմակերպությունը՝ Ստոկհոլմի Հայ մշակութային միությունը: Նույն ժամանակաշրջանում Շվեդիայում աշխուժացել է Հայ Առաքելական եկեղեցու գործունեությունը:

1989 թվականի դեկտեմբերին Սանդվիքեն քաղաքում գումարվել է Շվեդիայի հայկական միությունների և ընկերությունների I համագումարը, որն անհրաժեշտ է համարել Շվեդիայի հայ համայնքի ազգային և կրոնական կյանքը ղեկավարող մարմնի ստեղծումը: 1991 թվականին կայացած II համագումարի որոշմամբ Ուփսալա քաղաքում հիմնադրվել է «Շվեդիայի հայկական միությունների համադրող կենտրոն», որը համակարգում և ներկայացնում է անդամ կազմակերպությունների աշխատանքները, նպաստում Շվեդիայի հայերի և հայկական կազմակերպությունների սերտ համագործակցությունը, աջակցում Շվեդիայում բնակվող հայերին, մասնավորապես՝ հայ փախստականներին: Միությունը կազմակերպում է Հայոց Ցեղասպանության վերաբերյալ համաժողովներ, սեմինարներ, ցուցահանդեսներ, պաշտպանում է Հայկական հարցը: Միությունը համագործակցում է շվեդական և արտասահմանյան կազմակերպությունների և շվեդական իշխանությունների հետ:

«Շվեդիայի հայկական միությունների համադրող կենտրոն»-ի ջանքերով Շվեդիայում հիմնվել է «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի մասնաճյուղը: 1994 թվականից լույս է տեսնում Միության «Նոր հորիզոն» լրատվական մշակութային պաշտոնաթերթը, գործում է նաև www.armenica.org. կայքը՝ շվեդերեն և անգլերեն: 2001 թվականից գործունեություն է ծավալում Շվեդիայի «Հայ երիտասարդական կազմակերպությունը»:

2009 թվականի տվյալներով Շվեդիայում բնակվում է 5-6 հազար հայ, որի շուրջ 50%՝ հայաստանցիներ: Շուրջ 4 000 հայ բնակվում է Ստոկհոլմում (արվարձաններում) և Ուփսալայում, մնացածը՝ Վեսթերոս, Սոդերթելիե, Գոթեբորգ, Սանդվիքեն, Մալմո և Օրեբրո քաղաքներում:

Շվեդահայերի մեծ մասն աշխատում է գործարաններում, պետական կամ մասնավոր հաստատություններում, կան տեղական և մունիցիպալ գործիչներ, դասախոսներ, գիտնականներ, գործարարներ, արհեստավորներ, առևտրականներ: Շվեդիայի Խորհրդարանի պատգամավոր է ծագումով հայ Իսաբել Դինգիզյանը:

Ստոկհոլմում և արվարձաններում բնակվում է շուրջ 2500 հայ, գործում են՝ «Արարատ» միությունը, Ստոկհոլմի Եկեղեցական խորհուրդը, ՀՕՄ-ի և ՀՄԸՄ-ի Ստոկհոլմի մասնաճյուղերը: Այստեղ են գտնվում «Շվեդիայի հայկական միությունների համադրող կենտրոն»-ի և նրա «Նոր հորիզոն» պաշտոնաթերթի գրասենյակները:

Ուփսալայում բնակվում է շուրջ 1500 հայ, որոնց մեծ մասը ներգաղթել է Իրանից: Գործում են՝ Ուփսալայի «Արարատ» հայկական մարզական ակումբը, Հայ մշակութային միությունը, «Րաֆֆի» մշակութային միությունը, Ուփսալայի Եկեղեցական խորհուրդը, «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի Շվեդիայի մասնաճյուղը: Վեսթերոս, Սանդվիքեն, Գոթեբորգ, Թրոլհեթթան, Մալմո և Օրեբրո քաղաքներում նույնպես ձևավորվել են փոքրաթիվ հայ համայնքներ, գործում են մշակութային միություններ:

2000 թվականին Շվեդիայի Խորհրդարանը հանդես է եկել Օսմանյան Թուրքիայում հայերի Ցեղասպանության վերաբերյալ հայտարարությամբ: հայ համայնքի լոբբիստական աշխատանքների կարևորագույն նվաճումներից է 2009 թվականի հոկտեմբերին Մեծ Եղեռնի ճանաչման փաստը Շվեդիայի խոշորագույն ընդդիմադիր Սոցիալ-դեմոկրատական կուսակցության համագումարում:

No related posts.

- **Ռազմավարության նախագիծ**
-
  - **Սփյուռքի քաղաքականության ռազմավարության հայեցակարգը. նախագիծ(draft)**

    «Հայերն այսօր»-ը ներկայացնում է Սփյուռքի քաղաքականության ռազմավարության
- **Նախարարի օրագիր**
-
  - **Բաբկեն Տեր Գրիգորյանն այցելեց Հայաստանի Մխիթարյան կենտրոն**

    Ապրիլի 15-ին սփյուռքի նախարարի պարտականությունները կատարող
  - **Բաբկեն Տեր Գրիգորյանը դիմավորեց Լոս Անջելեսի հայկական դպրոցի աշակերտներին**

    20 տարի առաջ էր, երբ Լոս Անջելեսի
- **Սիրիահայություն**
-
  - **«Սիրիայում ապրող մեր հայրենակիցներն ուշադրության կենտրոնում են». Նազելի Էլբակյան**

    «Մենք ձեզ հետ ենք» խորագրի ներքո «Հումանիտար
  - **Սիրիահայերի խնդիրներն ուշադրության կենտրոնում են**

    Ապրիլի 22-ին սփյուռքի նախարարի պարտականությունները կատարող Բաբկեն

